Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 13—14

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 13—14

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԲՈԼՈՐ ԿՈԼԽՈԶՆԻԿՆԵՐԻՆ, ԿՈԼԽՈԶՆԻԿՈՒՀԻՆԵՐԻՆ, ԱՆԱՍՆԱՊԱՀԱԿԱՆ ՖԵՐՄԱՆԵՐԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻՆ, ԶՈՈՏԵԽՆԻԿՆԵՐԻՆ ՈՒ ԱՆԱՍՆԱԲՈՒՅԺՆԵՐԻՆ, ՀՈՂԱՅԻՆ ՕՐԳԱՆՆԵՐԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻՆ

### ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻՑ

Թանկագի՛ն ընկերներ.

*Հերոսական Կարմիր Բանակը Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի առաջնորդությամբ ջախջախում և վռնդում է գերմանա-ֆաշիստական զավթիչներին մեր հարազատ սովետական հողից: Մոտենում է մեր Հայրենիքի լիակատար ազատագրման ժամը գերմանական օկուպանտներից և պատերազմական գործողությունների փոխադրումը հիտլերյան Գերմանիայի տերիտորիայի վրա:*

*Մեր հարազատ Կարմիր Բանակին այս օրերում պայքարում անգնահատելի օգնություն է ցույց տալիս սովետական ամբողջ*

ժողովուրդը, որն առանց ձեռքերը ծալելու աշխատում է ֆաբրիկաներում և գործարաններում, կոլխոզներում ու սովխոզներում, իր բոլոր ուժերը նվիրելով թշնամու վերջնական ջախջախման գործին, ապահովելով ռազմաճակատը անհրաժեշտ ամեն ինչով:

Ամբողջ հայ ժողովրդի հետ միասին, մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը, դառնալով հայրենական մեծ պատերազմի մարտական մասնակիցը՝ անձնուրաց աշխատանքով օգնում է իր հարազատ Կարմիր Բանակին, ռազմաճակատին և երկրին տալիս է ավելի ու ավելի շատ հաց, միս, և հումք՝ արդյունաբերության համար:

Հաղթահարելով պատերազմի դժվարությունները, Հայաստանի կոլխոզները, սովխոզներն ու ՄՏ կայանները ընդլայնել են ցանքի տարածությունները, ավելացրել անասունների գլխաքանակը, բարձրացրել մթերատվությունը:

Այս տարվա գարնանը մեծ Ստալինին Հայաստանի գյուղատնտեսության առաջավորների կողմից տրված խոստումը մեր կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները կատարում են պատվով:



Մեր կոլխոզներն այս տարի աճեցրել են բարձր բերք՝ հաղթանակի բերք: Մեր ռեսպուբլիկան ժամկետից շուտ կատարել է անասնապահության զարգացման պետական պլանը: Արդեն հունիսի վերջին կոլխոզների ֆերմաներում կար ամեն տեսակի 250 հազար գլխով ավելի անասուն, քան եղել է ընթացիկ տարվա սկզբում: Անցյալ տարվա համեմատությամբ համարյա երեք անգամ կրճատվել է մատղաշի կորուստը: Հարյուրավոր կոլխոզներ կազմակերպված ձևով պատրաստվում են առաջիկա ձմռանը:

Անասնապահության բնագավառում 1944 թվի առաջին կիսամյակում ձեռք բերած հաջողությունների համար Սովետական կառավարությունը մեր ռեսպուբլիկային հանձնել է Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը:

Հայաստանի հիմնական անասնապահական շրջաններից մեկը՝ Ստեփանավանի շրջանը նույնպես նվաճել է Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը:

Այս բարձր պարգևը մեզ՝ անասնապահներիս և գյուղատնտեսության բոլոր աշխատողներիս պարտավորեցնում է ամրապնդել և բազմապատկել ձեռք բերած հաջողու-

թյունները և հետագա անդուլ, օրինակելի աշխատանքով հասնել այն բանին, որ անասնապահության վերելքի համար համամիութենական մրցության հետագա բոլոր շրջաններում մեր ռեսպուբլիկան միշտ գտնվի հաղթողների շարքում:

Ընկե՛ր կոլխոզնիկներ և կոլխոզնիկուհիներ, զոոտեխնիկներ և անասնաբույժներ, հողային օրգանների աշխատողներ.

Մեր՝ Հայաստանի անասնապահներիս առաջ կանգնած է մեծ և լուրջ խնդիր — հասնել անասունների գլխաքանակի ավելացման և անասնապահության մթերատվության բարձրացմանը, ժամանակին կատարել պետության հանդեպ ունեցած պարտավորությունները: Այդ նշանակում է, որ մենք բոլորս պետք է աշխատենք անասունների գլխաքանակը պահպանելու համար, վճռական պայքար մղենք կորուստների դեմ, վերացնենք ստերջությունը, ապահովենք հոտի վերարտադրման բարձր տեմպերը: Չպետք է լինի ոչ մի կոլխոզ, որը չկատարի անասնաբուծության զարգացման պետական պլանը:

Կերի ամուր բազան անասնապահության հետագա վերելքի գլխավոր պայմանն է: Մենք կոչ ենք անում բոլոր կոլխոզնիկնե-



րին և կոլխոզնիկուհիներին՝ արագորեն ավարտել խոտհունձը, պատրաստել ավելի շատ սիլոս, կատարել կոպիտ կերի կուտակման պլանը և լրիվ ապահովել հանրային հոտը կերով: Ամբողջ խոտն ու հարդը պետք է ժամանակին տեղափոխվեն անասունների ձմեռանոցները և պետք է սահմանել խիստ հսկողություն նրանց ծախսման վրա, թույլ չտալ կերի փչացում և վատնում: Մենք պետք է ժամանակին ավարտենք նոր անասնապահական շենքերի վերանորոգումը և հոգատար կերպով սարքավորենք ու տաքացնենք այդ շենքերը:

Ամեն մի կոլխոզի, ամեն մի ֆերմայի պատվի գործն է՝ ապահովել անասունների կուշտ ու տաք ձմեռումը:

Մենք կոչ ենք անում բոլոր հովիվներին, կթվորներին, , անասնապահներին, անասնաբույժներին և զոոտեխնիկներին՝ լայն կերպով օգտագործել մեր ռեսպուբլիկայի բնական հարստությունները և ամենուրեք հասնել անասունների բարձր մթերատվության:

Մենք պետք է ունենանք ոչ միայն ավելի շատ կով, ձի, ոչխար ու մայր խոզեր, այլև նրանց յուրաքանչյուրից պետք է ստանանք ավելի շատ մատղաշ, ավելի շատ

արտադրանք, կազմակերպենք բարձր կիթ ունեցող կովերի եռակի կիթ, հասնենք քաշի և բրդի ավելացման, պետք է կարգավորենք ստացվող արտադրանքի ճիշտ հաշվառումը:

Ընկե՛ր կոլխոզնիկներ ու կոլխոզնիկուհիներ, հողային օրգանների աշխատողներ, մենք կոչ ենք անում ձեզ՝ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը հանրային անասնապահության հետագա վերելքի համար, մեր ֆերմաները դարձնել բարձր արդյունքայնություն ունեցող և օրինակելի ֆերմաներ, ավելի լայն տարածել մեր լավագույն կթվորների, հովիվների, անասնապահների աշխատանքի փորձը, կազմակերպել անասունների խնամքն ու կերակրումը մեր ռեսպուբլիկայում առաջավոր, հռչակված անասնապահների օրինակով, դարձնել նրանց հաջողությունները բոլոր կոլխոզնիկների սեփականություն:

Կարմիր Բանակի հաղթական հարձակման այս վճռական օրերին, երբ արդեն մոտ է ցանկալի հաղթանակը, մենք պարտավոր ենք մոբիլիզացնել մեր բոլոր ուժերն ու միջոցները՝ ռազմաճակատին ցույց տրվող օգնությունն է՛լ ավելի ուժեղացնելու հա-



մար, քաջարի Կարմիր Բանակին օգնելու համար:

Կեցցե՛ մեր քաջարի Կարմիր Բանակը:

Կեցցե՛ կոլխոզային գյուղացիությունը:

Փա՛ռք մեծ զորավար, Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ, մեր սիրելի և հարազատ առաջնորդ ընկեր **ՍՏԱԼԻՆԻՆ**:

---

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԶԱՎԱԿՆԵՐԸ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՄԱՐՏԵՐՈՒՄ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԱՅ ՀԵՐՈՍՆԵՐԸ*)

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ ԳՈՒՐԳԵՆ ՄԻՐԶԱՅԻ— Գվարդիայի լեյտենանտ, ծնվել է 1914 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1935 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հունվարի 15-ի Հրամանագրով:

ԱՎԵՏԻՍՅԱՆ ՀՈՒՆԱՆ ՄԿՐՏՉԻ— Ավագ սերժանտ, ծնվել է 1916 թվին, ՀամԿ(բ)Պ անդամության թեկնածու, Կարմիր Բանակի շարքերումն է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի մայիսի 16-ի Հրամանագրով:

ԱՌԱՔԵԼՅԱՆ ՍՈՒՐԵՆ ՍՄԲԱՏԻ— Ավագ

*) Սովետական Միության հայ հերոսների և Կարմիր Բանակի հայ գեներալների հրապարակվող ցուցակները լրիվ չեն տեղեկությունների բացակայության հետևանքով:



սերժանտ, ծնվել է 1914 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1942 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի մայիսի 16-ի Հրամանագրով:

ԱՍԼԱՄԱԶՅԱՆ ՍՈՒՐԵՆ ԱՐՏԵՄԻ—Գվարդիայի սերժանտ, ծնվել է 1920 թվին— ԼԿԵՄ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1942 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի փետրվարի 24-ի Հրամանագրով:

ԲԱԲԱՋԱՆՅԱՆ ՀԱՄԱԶԱՍՊ ԽԱՉԱՏՈՒՐԻ — Գվարդիայի գնդապետ, ծնվել է 1907 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1926 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի ապրիլի 26-ի Հրամանագրով:

ԲԱՂՐԱՄՅԱՆ ԻՎԱՆ ՔՐԻՍՏԱՓՈՐԻ—Բանակի գեներալ, ծնվել է 1896 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1920 թվից, Սովետական Միության Հերո-

սի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հուլիսի 27-ի Հրամանագրով:

ԲԱԼԱՅԱՆ ԳԱՐԵԳԻՆ ՇԵԿՈՅԻ— Կապիտան, ծնվել է 1912 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1934 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի հոկտեմբերի 23-ի Հրամանագրով:

ԲՈՍՏԱՆՋՅԱՆ ՄԻՀՐԱՆ ՄԻՀՐԱՆԻ— Կարմիրբանակային, ծնվել է 1913 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի փետրվարի 22-ի Հրամանագրով:

ԲՈՒՌՆԱԶՅԱՆ ՍԵՐԳԵՅ ԱՎԴԵԻ— Ավագ լեյտենանտ, ծնվել է 1918 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի օգոստոսի 2-ի Հրամանագրով:

ԳՐԻԳՈՐՅԱՆ ԳԱՐԵԳԻՆ ՎԱՐԴԱՆԻ— Բժշկական ծառայության գվարդիայի լեյտենանտ, ծնվել է 1923 թվին, ՀամԿ(բ)Պ ան-



դամության թեկնածու, Կարմիր Բանակի շարքերումն է 1942 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի նոյեմբերի 5-ի Հրամանագրով:

ԳԱՐԱՆՅԱՆ ԵՐՎԱՆԴ ԳԵՎՈՐԳԻ—Ավագ, ծնվել է 1903 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հունվարի 15-ի Հրամանագրով:

ԳԱԼՍՏՅԱՆ ԳՐԻԳՈՐ ՇԱՀՈՒՄԻ— Գվարդիայի գնդապետ, ծնվել է 1908 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1930 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի նոյեմբերի 4-ի Հրամանագրով:

ԳԱԼՍՏՅԱՆ ՍՈԿՐԱՏ ԱԼԵՔՍԱՆԻ—Գվարդիայի կարմիրբանակային, ծնվել է 1918 թվին, անկուսակցական, Կարմիր Բանակի շարքերումն է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հունիսի 3-ի Հրամանագրով:

**ԴԱՐԲԻՆՅԱՆ ԼԵՎՈՆ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ**— Գվարդիայի գնդապետ, ծնվել է 1903 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերում է 1923 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հունվարի 10-ի Հրամանագրով:

**ԴԱՆԵԼՅԱՆ ԵՐԵՄ ԻՎԱՆԻ**— Գվարդիայի ավագ սերժանտ, ծնվել է 1901 թվին, ՀամԿ(բ)Պ անդամության թեկնածու, Կարմիր Բանակի շարքերում է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հունվարի 15-ի Հրամանագրով:

**ԻՍՐԱՅԵԼՅԱՆ ԼԻՊԱՐԻՏ ՄԻՐԶՈՅԻ**— Գվարդիայի սերժանտ, ծնվել է 1922 թվին, անկուսակցական, Կարմիր Բանակի շարքերում է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի փետրվարի 22-ի Հրամանագրով:

**ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ԱՍՔԱՆԱԶ ԳԵՎՈՐԳԻ**— Գնդապետ, ծնվել է 1899 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերում է 1920 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սո-



վետի Նախագահության 1943 թվի նոյեմբերի 1-ի Հրամանագրով:

**ԿԱՐԱԽԱՆՅԱՆ ՋՀԱՆ ՍԱՐԳՍԻ**— Սակրավոր կարմիրբանակային, ծնվել 1923 թվին, ԼԿԵՄ անդամ, Կարմիր Բանակի շարքերում է 1942 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի մայիսի 16-ի Հրամանագրով:

**ՀԱՅՐԻՐՅԱՆ ԱՐՄԵՆ ԹԵՎԱՆԻ**— Կապիտան, ծնվել է 1916 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի ապրիլի 14-ի Հրամանագրով:

**ՀԱԿՈԲՅԱՆ ՌՈՒԲԵՆ ՂԱԶԱՐԻ**— Գվարդիայի լեյտենանտ, ծնվել է 1914 թվին, Կարմիր Բանակի շարքերում է 1943 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի մայիսի 16-ի Հրամանագրով:

**ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԱՐՏԱՇԵՍ ՔՐԻՍՏԱՓՈՐԻ**— Ավագ լեյտենանտ, ծնվել է 1921 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերում է 1941 թվից, Սովետական

Միության Հերոսի կոչում է ստացել 1944 թվին:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՄԻԽԱՅԵԼ ՄՈՒՇԵՂԱՂԱԹԵԼԻ— Գվարդիայի եֆրեյտոր, ծնվել է 1920 թվին, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հուլիսի 22-ի Հրամանագրով:

ՀԱԿՈԲՅԱՆՑ ԳԵՈՐԳԻ ԹԱՄՐԱԶԻ— Մայոր, ծնվել է 1912 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հունիսի 3-ի Հրամանագրով:

ՄԿՐՏՈՒՄՅԱՆ ՍԱՄՍՈՆ ՄՈՎՍԵՍԻ— Կապիտան, ծնվել է 1910 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերում է 1940 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1942 թվի սեպտեմբերի 13-ի Հրամանագրով:

ՄԵԼԻՔՅԱՆ ԽԱՉԱՏՈՒՐ ԲԵԳԼԱՐԻ— Լեյտենանտ, ծնվել է 1911 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերում է 1930 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել 1942 թվին:

ՄԱԴՈՅԱՆ ՂՈՒԿԱՍ ԿԱՐԱՊԵՏԻ— Մա-



յոր, ծնվել է 1906 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերում է 1940 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1942 թվի մարտի 31-ի Հրամանագրով:

ՄԱՐԳՈՒԼՅԱՆ ԼԵՎՈՆ ՄԱՐԿԻ— Կարմիր բանակային, ծնվել է 1920 թվին, ՀամԿ(բ)Պ անդամության թեկնածու, Կարմիր Բանակի շարքերում է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի հոկտեմբերի 17-ի Հրամանագրով:

ՄԵԼՔՈՆՅԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ ԽԱՉԻԿԻ— Գվարդիայի ավագ սերժանտ, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի սեպտեմբերի 13-ի Հրամանագրով:

ՄԻՔԱՅԵԼՅԱՆ ԳԵԴԵՈՆ ՀԱՅՐԱՊԵՏԻ— Գվարդիայի փոխգնդապետ, ծնվել է 1907 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերում է 1927 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի հոկտեմբերի 28-ի Հրամանագրով:

ՄՈՒՐԱԴՅԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՀԱԿՈԲԻ— Լեյտենանտ, ծնվել է 1911 թվին, ՀամԿ(բ)Պ

անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1941 թվի նոյեմբերի 1-ի Հրամանագրով:

**ՇԱՀՈՒՄՅԱՆ ԻՎԱՆ ԿՈՍՏԱՆԻ**— Սերժանտ, ծնվել է 1914 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1941 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի հոկտեմբերի 30-ի Հրամանագրով:

**ՋԱՊԶԱԽՅԱՆ ԼԱԶՐ ՍԵՐԳՈՅԻ**— Ավագ քաղղեկ, ծնվել է 1911 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1933 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել 1943 թվին:

**ՊԵՏՐՈՍՅԱՆ ՍՈՒՐԵՆ ԳՐԻԳՈՐԻ**—Գվարդիայի կապիտան, ծնվել է 1910 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1930 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել 1944 թվին:

**ՊՈՂՈՍՅԱՆ ԱՐԱՄԱՅԻՍ ՍԱՐԳՍԻ**—Ավագ սերժանտ, ծնվել է 1914 թվին, ՀամԿ(բ)Պ անդամության թեկնածու, Կարմիր Բանակի շարքերումն է 1930 թվից, Սովետական



Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի դեկտեմբերի 20-ի Հրամանագրով:

**ՍԱՐԳՍՅԱՆ ՎԱՍԻԼ ՆԱԴԵՑԵՎԻ**— Գվարդիայի լեյտենանտ, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի նոյեմբերի 17-ի Հրամանագրով:

**ՍԱՐԳՍՅԱՆ ԱՐԱՄԱՅԻՍ ԱՍԱՏՈՒՐԻ**— Գվարդիայի եֆրեյտոր, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հուլիսի 22-ի Հրամանագրով:

**ՍՏԵՓԱՆՅԱՆ ՆԵԼՍՈՆ ԳԵՎՈՐԳԻ**— Մայոր, ծնվել է 1911 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1932 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1942 թվի հոկտեմբերի 23-ի Հրամանագրով:

**ՍԱՐԳՍՅԱՆ ՖԵԴՈՐ ԻՍԱՀԱԿԻ**— Լեյտենանտ, ծնվել է 1915 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1937 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով:

**ՕՀԱՆՅԱՆ ՍԵՐԳԵՅ ՄԱՄԲՐԵԻ**— Լեյտե-

*նանտ, ծնվել է 1921 թվին, ԼԿԵՄ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1940 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի փետրվարի 22-ի Հրամանագրով:*

*ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ԱԲՐԱՀԱՄԻ— Գվարդիայի լեյտենանտ, ծնվել է 1905 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1943 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի օգոստոսի 12-ի Հրամանագրով:*

*ՂԱԶԱՐՅԱՆ ՍԻՄՈՆ ԱՐԿԱԴԻԻ— Ավագ. Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի նոյեմբերի 1-ի Հրամանագրով:*

*ՂԱԶԱՐՅԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ ԱԲՐԱՀԱՄԻ— Գեներալ-մայոր, ծնվել է 1904 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1920 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի հոկտեմբերի 16-ի Հրամանագրով:*

*ՂԱԶԱՐՅԱՆ ՀՄԱՅԱԿ ԼԵՎՈՆԻ— Կապի-*



*տան, ծնվել է 1907 թվին, անկուսակցական, Կարմիր Բանակի շարքերումն է 1934 թվից, Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի փետրվարի 22-ի Հրամանագրով:*

---

## 1939—40 Թ. Թ. ՍՊԻՏԱԿ ՖԻՆՆԵՐԻ ԴԵՄ ՄՂՎՈՂ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԱՅ ՀԵՐՈՍՆԵՐԸ

*ԲԱՐՍԵՂՅԱՆ ՄԻԽԱՅԻԼ ԱՐՏԵՄԻ— Հրետանու գեներալ-լեյտենանտ, ծնվել է 1899 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1917 թվից:*

*ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ ԳԵՎՈՐԳ ՄԻՔԱՅԵԼԻ— Կապիտան, ծնվել է 1909 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1933 թվից:*

*ՄԱՆԱՍՅԱՆ ԻՍԱՀԱԿ ՄԱՐԿՈՍԻ— Կապիտան, ծնվել է 1907 թվին, ՀամԿ(բ)Պ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1935 թվից:*

*ՍԻՄՈՆՅԱՆ ԿԱՐԱՊԵՏ ԿԱՐԱՊԵՏԻ— Լեյտենանտ, ծնվել է 1913 թվին, ԼԿԵՄ անդամ, Կարմիր Բանակի շարքերումն է 1938 թվից:*

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՀԱՅ ԳԵՆԵՐԱԼՆԵՐԸ

**ԱՌՈՒՇԱՆՅԱՆ ԲԱԳՐԱՏ ԻՍԱՀԱԿԻ**— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կուտուզովի 2-րդ աստիճանի, Կարմիր Դրոշի շքանշաններով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

**ԱԼԱՎԵՐԴՅԱՆ ՔՐԻՍՏԱՓՈՐ ՆԻԿՈՂՈՍԻ** — Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Դրոշի երկու շքանշաններով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

**ԲԱՂՐԱՄՅԱՆ ԻՎԱՆ ՔՐԻՍՏԱՓՈՐԻ**— Բանակի գեներալ, Սովետական Միության Հերոս, պարգևատրվել է— Ոսկե աստղ մեդալով, Լենինի, Սուվորովի 1-ին աստիճանի, Կուտուզովի 1-ի աստիճանի, Կարմիր Դրոշի շքանշաններով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

**ԲԱՐՍԵՂՅԱՆ ՄԻԽԱՅԵԼ ԱՐՏԵՄԻ**— Հրետանու գեներալ-լեյտենանտ, Սովետական Միության Հերոս, պարգևատրվել է— Ոսկե աստղ մեդալով, Լենինի, Կարմիր Դրոշի երկու, Կարմիր Աստղ շքանշաններով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

**ԲԱԲԱՅԱՆ ՀՄԱՅԱԿ ԳՐԻԳՈՐԻ**— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Սուվորովի 2-րդ աստիճանի, Կուտուզովի 2-րդ աստի-



ճանի, Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի, Կարմիր Դրոշի, Կարմիր Աստղի շքանշաններով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

**ԲՈՒՌՆԱԶՅԱՆ ԱՎԵՏԻՔ ԻԳՆԱՏԻ**— Բժշկական ծառայության գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Դրոշի և Կարմիր Աստղի շքանշաններով:

**ԳԱԼԱՋՅԱՆ ՍԵՐԳԵՅ ՖԵՈԴՈՐԻ**— Գեներալ-լեյտենանտ, պարգևատրվել է— Կարմիր Դրոշի երկու, Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի շքանշաններով:

**ԳԻՆՈՍՅԱՆ ՍՏԵՓԱՆ ԻԼԻՉԻ**— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Սուվորովի 2-րդ աստիճանի, Կուտուզովի 2-րդ աստիճանի, Կարմիր Դրոշի երկու շքանշաններով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

**ԳԱԼՍՏՅԱՆ ԲԵՆԻԱՄԻՆ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ**— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Դրոշի շքանշանով:

**ԳԱՍՊԱՐՅԱՆ ՍՈՒՐԵՆ ԱՐՏԵՄԻ**—Տեխնիկական զորքերի գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Դրոշի, Կուտուզովի 3-րդ աստիճանի և Կարմիր Աստղի շքանշաններով:

**ԳԱՍՊԱՐՅԱՆ ԻՍԱՀԱԿ ԳԱՍՊԱՐԻ**— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Սուվո-

րովի 2-րդ աստիճանի, Կարմիր Դրոշի երեք և Բոգդան Խմելնիցկու 1-ին աստիճանի շքանշաններով:

ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱՐՏԱՇԵՍ ԱՐՇԱԿԻ— Ինտենդանտական ծառայության գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Դրոշի շքանշանով:

ԹՈՒՄԱՆՅԱՆ ՀԱՅԿ ԼԱԶՐԻ— Գվարդիայի գեներալ-մայոր, պարգևատրված է— Սուվորովի 2-րդ աստիճանի, Կարմիր Դրոշի չորս և Կարմիր Աստղի շքանշաններով, «ԲԳԿԲ 20 տարին», «Լենինգրադի պաշտպանության համար», «Ստալինգրադի պաշտպանության համար» մեդալներով:

ԻՍԱԿՈՎ ԻՎԱՆ ՍՏԵՓԱՆԻ— Նավատորմի Ադմիրալ, պարգևատրվել է— Լենինի, Կարմիր Դրոշի, Ուշակովի 1-ին աստիճանի և Կարմիր Աստղի շքանշաններով:

ԿԱԼՊԱԿՁԻ (ԿԱԼՊԱԿՋՅԱՆ) ՎԼԱԴԻՄԻՐ ՅԱԿՈՎԼԵՎԻՉ—Գեներալ-լեյտենանտ, պարգևատրվել է— Սուվորովի 1-ին աստիճանի, Կուտուզովի 1-ին աստիճանի, Կարմիր Դրոշի շքանշաններով:

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՍԵՐԳԵՅ ԻՍԱՀԱԿԻ— Գվարդիայի գեներալ-մայոր, պարգևատրվել է— Սուվորովի 2-րդ աստիճանի, Կուտուզովի 2-րդ աստիճանի, Կարմիր Դրո-



շի շքանշաններով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

ՔՈՒՋԱՐՅԱՆ ԱՐՏՈՒՐ ԳՐԻԳՈՐԻ— Բժշկական ծառայության գեներալ-մայոր, պարգևատրվել է— Լենինի և Կարմիր Դրոշի շքանշաններով:

ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ ՍԱՐԳԻՍ ՍՈՂՈՄՈՆԻ— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Լենինի, Կարմիր Դրոշի երկու, Սուվորովի 2-րդ աստիճանի, Կուտուզովի 2-րդ աստիճանի շքանշաններով, «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով և «Ծառայության համար» Ամերիկյան հրամանատարական շքանշանով:

ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ ՀԱՅԿ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Դրոշի շքանշանով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

ՉԱՅԼԱԽՅԱՆ ԳԵՎՈՐԳ ՔՐԻՍՏԱՓՈՐԻ— Հրետանու գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Աստղի շքանշանով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

ՍԱՐԳՍՅԱՆ ԱՇՈՏ ՍԱՐԳՍԻ— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Դրոշի շքանշանով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

ՍԱՖԱՐՅԱՆ ՆՎԵՐ ԳԵՎՈՐԳԻ— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Սուվորովի 2-րդ աստիճանի, Կուտուզովի 2-րդ աստի-

ճանի, Կարմիր Դրոշի, «Պատվո նշան» շքանշանով:

ՕՐԲԵԼԻ ԼԵՎՈՆ ԱԲԳԱՐԻ— Բժշկական ծառայության գեներալ-գնդապետ, պարգևատրվել է— Լենինի, Կարմիր Դրոշի, Կարմիր Աստղի շքանշաններով, «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով և «Լենինգրադի պաշտպանության համար» մեդալով:

ՕՀԱՆՋԱՆՅԱՆ ԳՈՒՐԳԵՆ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ — Արդարադատության գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Աստղի և Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի շքանշաններով:

ՕՀԱՆՋԱՆՅԱՆ ՍՈՒՐԵՆ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ— Ավիա-ինժեներական ծառայության գեներալ-մայոր, պարգևատրվել է— Կարմիր Դրոշի և Կարմիր Աստղի շքանշաններով:

ՂԱԶԱՐՅԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ ԱԲՐԱՀԱՄԻ— Գեներալ-մայոր, Սովետական Միության Հերոս, պարգևատրվել է— Ոսկե Աստղ մեդալով, Լենինի, Սուվորովի 2-րդ աստիճանի, Կարմիր Դրոշի երկու շքանշաններով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

ՏՈՄՐՈՒՉԻ (ՏՈՄՐՈՒՉՅԱՆ) ՎԼԱԴԻՄԻՐ ՍՏԵՓԱՆԻ— Գեներալ-լեյտենանտ:

ՏԵՐ-ԳԱՍՊԱՐՅԱՆ ԳԵՎՈՐԳ ԱՆԴՐԵԻ— Գեներալ-մայոր, պարգևատրվել է— Սու-



վորովի 1-ին և 2-րդ աստիճանի, Կարմիր Դրոշի երկու շքանշաններով և «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով:

ՎԱՐԴԱՆՅԱՆ ԱՐՏԱԿ ԱՐՄԵՆԱԿԻ— Գեներալ-մայոր:

ՎԵՔԻԼՅԱՆ ԻՎԱՆ ԴԱՎԹԻ— Հրետանու գեներալ-լեյտենանտ, պարգևատրվել է— Սուվորովի 1-ին աստիճանի, Կարմիր Դրոշի երկու, Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի Կարմիր Աստղի շքանշաններով, «ԲԳԿԲ 20 տարին» մեդալով և «Ստալինգրադի պաշտպանության համար» մեդալով:

ՈՍԿԱՆՅԱՆ ԽԱՉԱՏՈՒՐ ԹԱԴԵՎՈՍԻ— Քարշի գեներալ-մայոր, պարգևատրված է— Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի շքանշանով:

# ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ՌՈՒՄԻՆԻԱ

### (ՏԵՂԵԿԱՆՔ)

Ռումինիան գտնվում է հարավ-արևելյան Եվրոպայում, Բալկանյան թերակղզու հյուսիսային մասում։ Նա սահմանակից է ՍՍՌՄ-ին, Չեխոսլովակիային, Հունգարիային, Հարավսլավիային և Բուլղարիային։ ՍՍՌՄ և Ռումինիայի պետական սահմանագիծը կազմում է Դունայ գետը (Դունայի ստորին հոսանքի կիլիյան բազուկը) և Դունայի մեջ թափվող Պրուտ գետը։ Ռումինիայի արևելյան ափերը ողողվում են Սև ծովի ջրերով։ Հաճախ Ռումինիային թվարկում են Բալկանյան պետությունների շարքում։ Պատմական և քաղաքական առումով այդ անվանումը ճշմարիտ է։ Ռումինիայի բախտը, նրա ամբողջ պատմության ընթացքում, սերտորեն կապված է եղել Բալկանյան պետությունների բախտի



հետ։ Ռումինները միշտ ունեցել են անմիջական մասնակցություն Բալկանյան թերակղզում առաջ եկած բոլոր կոնֆլիկտներին։

Ռումինիայի տարածությունը մինչև 1940 թ. օգոստոսի մեկը կազմում էր 245.000 քառակուսի կիլոմետր։ Բանատի, Տրանսիլվանիայի, Բուկովինայի, Կրիշանայի և Մարամուրեշի շրջանները Ռումինիային միացնելով, երկրի տարածությունը առաջին համաշխարհային պատերազմի շրջանի համեմատությամբ կրկնապատկվեց։

Ռումինական բոյարները օգտվելով Սովետական երիտասարդ ռեսպուբլիկայի ժամանակավոր թուլությունից, 1918 թ. սկզբներին գրավեցին Բեսարաբիան և իրենց ձեռքում էին պահում այն ընդհուպ մինչև 1940 թ. հունիս ամիսը։ Սովետական կառավարության կտրուկ պահանջով Սովետական Միությանը վերադարձվեց Բեսարաբիան և գերազանցապես ուկրաինացիներով բնակեցված Հյուսիսային Բուկովինան։ Առանցքի երկրներին միանալու հետևանքով Ռումինիան 1940 թ. օգոստոսին կորցրեց Հյուսիսային Տրանսիլվանիան։ 1940 թ. օգոստոսի 30-ին «Վիեննայի արբիտրաժով» գերմանացիները բաժանեցին այդ հատվածը Ռու-

մինիայից և Հունգարիային ավէն, որպես վճար վերջինիս հիտլերյան ագրեսիային բլոկին միանալու համար։ Շուտով Ռումինիան կորցրեց և Հարավային Դոբրուջան (7·700 կմ· տարածությամբ և 500·000 բնակիչներով), որը միացվեց Բուլղարիային։

Ռումինիայի ներկայիս տերիտորիան կազմում է 193·000 քառակուսի կիլոմետր։

Ռումինիայի բնակչությունը 1940 թ. օգոստոսին, տերիտորիալ փոփոխումներից հետո, կազմում էր մոտ 13,5 միլիոն մարդ։ Մինչ 1940 թ. Ռումինիայի բնակչության քանակը կազմելով 20 միլիոն մարդ, միաժամանակ Ռումինիան աչքի էր ընկնում բազմազգությամբ, իսկ տերիտորիալ փոփոխումները և դրա հետևանքով բնակչության նվազելու պատճառով, զգալիորեն աճեց ռումինների տեսակարար կշիռը բնակչության ընդհանուր քանակի մեջ։ Այժմ ևս բնակչության մոտ 14 տոկոսը կազմում են ազգային փոքրամասնություններ (հունգարներ, հրեաներ, ռուսներ և ուկրաինացիներ— մոտ 100·000 մարդ, և այլ ժողովուրդների խմբեր)։ Ռումինիայում բնակչության խտությունը կազմում է 70 մարդ մեկ քա-



ռակուսի կիլոմետրի վրա։ Եթե Անգլիայում յուրաքանչյուր հինգ բնակչից չորսը քաղաքում են ապրում և մեկը գյուղում, Ռումինիայում ընդհակառակը, հինգ բնակչից չորսը գյուղում են ապրում և միայն մեկը քաղաքում։

Ռումինիայում մեծ քաղաքներ քիչ կան։ Մայրաքաղաք Բուխարեստը (Բուքուրեշտի) գտնվում է երկրի հարավային մասում և միայն 45 կմ· է Դանուբից և բուլղարական սահմանից հեռու, ունի մինչև 647·000 բնակիչ, Յասսին (Յաշի), բնակչության քանակով երկրորդ մեծ քաղաքը Ռումինիայում և Մոլդավական իշխանության նախկին մայրաքաղաքը, ունի մոտ 105·000 բնակիչ, Գալաց— Դանուբի վրա կարևորագույն նավահանգիստը— 102·000 բնակիչ, Տիմիշոարա— արդյունաբերական կարևոր կենտրոն Բանատում— 90·000 բնակիչ։ Այնուհետև կարևոր քաղաքներից են Արադ— 76·000, Կրիշանայում՝ Պլոեշտի— նավթային արդյունաբերության կենտրոնը— 77·000, Բրաիլա— Դանուբի նավահանգիստներից՝ Գալաց քաղաքի մոտ— 70·000, Բրաշով— Տրանսիլվանիայում, բնակչության դերակշռող մա-

ու գերմանացիներ են— 62.000, Կոնստանցա— միակ ժամանակակից նավահանգիստը Ռումինիայում Սև ծովի ափին—61.000, Կրայովա— գյուղատնտեսական արգավանդ Օլտենիի մարզի կենտրոնը— 56.000 բնակիչներով և մյուսները:

Ռումինիայի կլիման մեղմ է և տեղումներով բավարար, հատկապես Դանուբի հովտում, որտեղ հողերը արգավանդ են: Երկրի արևելյան և հարավային դաշտավայրերից դեպի արևմուտք ռելեֆը բարձրանում է և Ռումինիայի արևմտյան կենտրոնական մասում աղեղնաձև ձգվում են Կարպատները— նրա շարունակությունը կազմող Կարպատյան Ալպերը, որոնք ծածկված են անտառներով: Երկրի տերիտորիայով հոսող Դանուբը և նրա վտակները՝ Սերետ, Դիմբովիցա, Օլտը, Ժիուլը և մյուսները, ինչպես և Տիսայի մեջ թափվող արևմտյան Ռումինիայում Ջրասա Մորոշ գետը երկրի տրանսպորտի և ոռոգման համար խիստ կարևոր նշանակություն ունեն:

Ռումինիան ագրարային երկիր է: Ցանքային տարածությունը կազմում է մոտ 12 միլ. հեկտար, դրանից մոտ 5 միլ. հեկտարը մշակում են եգիպտացորեն, որը



հանդիսանում է ռումինական գյուղացիության հիմնական սննդամթերքը, մոտ 3 միլիոն հեկտար ցորեն և այլ հացահատիկային կուլտուրաներ: Տեխնիկական կուլտուրաները երկրում լայն զարգացում չեն գտել: Զգալիորեն տարածված է խաղողագործությունը:

Գյուղացիական տնտեսությունների գերակշիռ մասը տառապում է սակավահողությունից և հողազրկությունից: Ներկայումս էլ, կալվածատիրական հողատիրության «լիկվիդացիայից» հետո, 12.200 խոշոր կալվածատերեր, որոնցից յուրաքանչյուրը 100 և ավելի հեկտար հող ունեն, իրենց ձեռքումն են պահում բոլոր հողերի 27,7 տոկոսը, այսինքն այնքան, որքան երկուս ու կես միլիոնի սակավահող գյուղացիներն ունեն: Հողամշակումը թույլ է մեքենայացված, իսկ բերքատվությունն ու ապրանքայնությունը աստիճանաբար ավելի ու ավելի ընկնում են:

Արդյունաբերությունը թույլ է զարգացել: Արդյունաբերության մեջ գերակշռող են մանր ձեռնարկությունները: Երկրում կան նավթի հարուստ հանքեր (1937 թ. պաշարները հաշվվում էին մոտ 60 միլ. տոննա), ինչպես և քարածուխի, երկաթի,

ոսկու, արծաթի, կերակրի աղի և այլ հարստություններ: Բայց, ի բաց առյալ նավթահանումից, մյուս հանքային հարստությունների շահագործումը թույլ է զարգացել: Ռումինական նավթային հանքարդյունահանությունը Արևմտյան Եվրոպայում ամենախոշորն է: 1936 թ. Ռումինիայի նավթարդյունահանությունը տվեց մինչև 8,7 մլ. տ. արտադրանք, բայց արդեն 1941 թ. կազմեց 5,2 մլ. տ., իսկ 1943 թ. 5 մլ. տ.: 1944թ. նավթարդյունահանությունը էլ ավելի նվազեց, շնորհիվ սովետական և դաշնակիցների ավիացիայի հաճախակի ռմբակոծումների Պլոեշտի—Բուզաու նավթարդյունաբերական հանգույցներին: Ռազմական և մետալուրգիական գործարանները շատ չեն, իսկ գերմանացիների կողմից Ռումինիայի օկուպացվելուց հետո դրանք բոլորը զավթվեցին և միացվեցին գլխավորապես գերմանական «Գերման Գյորինգ» կոնցերնին:

Տրանսպորտային տնտեսությունը երկրում թույլ է զարգացել: 1.000 կմ. տարածության հաշվով ընկնում է միայն 38 կմ. երկաթուղագիծ: Կարևորագույն նշանակություն ունի նավարկությունը Դանուբի վրա (Դանուբի Ռումինիայի տերի-



տորիայով հոսքը կազմում է 1.100 կմ.): Դանուբը Եվրոպայում իր մեծությամբ երկրորդ գետն է, զիջելով միայն Վոլգային: Դանուբը սկիզբ առնելով Գերմանիայի տերիտորիայում, հոսում է Ավստրիայի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Հարավսլավիայի, Բուլղարիայի, Ռումինիայի և ՍՍՌՄ-ի տերիտորիայով. այդպիսով Դանուբը միացնում է Արևմտյան և Կենտրոնական Եվրոպան Սև ծովի հետ: Ռումինիայի ծովային տորմիղի տոննաժը խիստ սահմանափակ է: Սև ծովի ափին ժամանակակից միակ նավահանգիստը Կոնստանցա քաղաքն է:

Ռումինիան կոնստիտուցիոն միապետական երկիր է: Աչքի ընկնող քաղաքական պարտիաներից են նացիոնալ-լիբերալների պարտիան, որը ներկայացնում է խոշոր բուրժուազիայի շահերը, նացիոնալ-ցարանիստական*) պարտիան, որը ներկայացնում է շահագործվող գյուղացիության և մանր բուրժուազիայի շահերը, սոցիալ-դեմոկրատական պարտիան և կոմունիստական պարտիան, որը արգելվեց 1923 թ.:

Դեռևս 1930 թ. բոյարների և խոշոր

*) Ծարան — գյուղացի.

բուրժուազիայի ռեակցիոն շրջաններում աճեց երկրում ռազմական դիկտատուրայի ստեղծման տենդենցը: 1934 թ. փաստորեն դադարելով գործելուց պարլամենտը, արտապարլամենտային կառավարությունը 1938 թ. նախկին կոնստիտուցիան փոխելով, քաղաքական բոլոր պարտիաները ցրեց և երկրում սահմանեց ռազմական դիկտատուրայի ռեժիմ:

Գերմանական ֆաշիզմը իր եվրոպական սպանդի ծրագրի իրագործման և ՍՍՌՄ-ի վրա հարձակվելու համար խիստ կարևորագույն նշանակություն էր տալիս Ռումինիային: Ռումինիան անհրաժեշտ էր Գերմանիային, որպես նավթի մատակարարման կարևորագույն աղբյուրի, որպես գյուղատնտեսական մթերքներ և մանավանդ որպես թնդանոթային միս մատակարարող երկրի: Ռումինիայի ռեակցիոն կառավարողները չէին հակադրվում Գերմանիայի կողմից Ռումինիայի գործերին աճող միջամտությանը: 1939 թ. մարտի 23-ին կնքելով Գերմանիայի հետ տնտեսական «համաձայնությունը», Ռումինիան վերածվեց Գերմանիայի տնտեսական կցորդի: 1940 թ. նոյեմբերին Գերմանիան իր զորքերը մտցրեց Ռումինիա— ՍՍՌՄ-ի



և Բալկանյան երկրների վրա հարձակվելու համար: Ռումինիայի գերմանական վասալության հինգ տարին երկիրը հասցրեց տնտեսական չտեսնված քայքայման և ազգային աղետի եզրին: Հիտլերյան շայկայի ռումինական կամակատար Անտոնեսկուն, որպես Գերմանիայի «դաշնակցի», Հիտլերի պահանջով սովետա-գերմանական ռազմաճակատն էր ուղարկում ռումինական նոր և նոր դիվիզիաներ: Օդեսայի տակ, Ղրիմում 1941—1942 թ. թ. ռումինական բանակը կորցրեց ավելի քան կես միլիոն մարդ սպանված և վիրավոր: Ստալինգրադի տակ գերմանական բանակների ջախջախման հետ միասին, ջախջախվեց և ռումինական բանակը— ավելի քան 16 ռումինական դիվիզիաներ (12 հետևակային, 3 հեծյալ և 1 տանկային դիվիզիա), ոչնչացվեցին Ստալինգրադի տակ Կարմիր Բանակի կործանիչ հարվածների շնորհիվ, իսկ շրջապատված գերմանական 6-րդ բանակի հետ օղակի մեջ սեղմված էր նաև ռումինական հետևակային մեկ դիվիզիա և մեկ հեծյալ դիվիզիա, որոնք նույնպես ջախջախվեցին:

Նովոռոսիյսկի, Կուբանի, Թամանի, Ղրիմի, Հարավ-արևմտյան Ուկրաինայի և Մոլդավական ռեսպուբլիկայի օկուպացված

շրջանների ազատագրման համար Կարմիր Բանակի սրընթաց և հաղթականորեն մղած մարտերը ռումինական բանակին էլ ավելի սոսկալի ջախջախման արդյունքի հասցրին։ 1944 թ. մարտի 26-ին Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը և ապրիլի 8-ին Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը մտան Ռումինիայի տերիտորիան։ Գերմանիան ցանկանում էր Ռումինիայի տերիտորիան վերածել ռազմական գործողությունների, դեպի Գերմանիա տանող մատույցների պաշտպանության գործողությունների ռազմադաշտի։ Ռումինիան կանգնած էր ռազմա-տնտեսական ավերածության և ազգային նոր աղետի եզրին։ Վաղուց ցնդել էր «մեծ Ռումինիայի»՝ Բեսարաբիայի, Օդեսայի, Ղրիմի և Կովկասի Սև ծովեզրյա շրջանների Ռումինիայի կազմի մեջ միացնելու ցնորամիտ և սապոնի պղպջակի նման պայթած երազը։ Կարմիր Բանակի ջախջախիչ հարվածների տակ Գերմանիան կրեց ոչ միայն ռազմական, այլև քաղաքական խոշոր պարտու-



թյուն։ Գերմանական բանակի «անպարտելիության» առասպելը հօդս էր ցնդել։ Գերմանիան գտնվում է լիակատար փլուզման եզրին։ Ընկեր Ստալինը իր 1944 թ. մայիսի 1-ի հրամանի մեջ ասում է. «Ռումինիան, Հունգարիան, Ֆինլանդիան և Բուլղարիան միայն մի հնարավորություն ունեն խուսափել կատաստրոֆից — խզում գերմանացիների հետ և դուրս գալ պատերազմից»։ Եվ այնուհետև հրամանում ասվում է. «Եվ այդ երկրների ժողովուրդները որքան շուտ հասկանան, թե իրենց ինչ փակուղու են հասցրել հիտլերականները, որքան արագ նրանք դադարեցնեն ամեն տեսակ աջակցություն՝ իրենց գերմանական ստրկացնողներին և դրանց կամակատար-կվիսլինգներին իրենց սեփական երկրում, այնքան այդ երկրները քիչ զոհեր և ավերածություն կկրեն պատերազմից, այնքան ավելի նրանք կարող են հույս ունենալ դեմոկրատական երկրների ըմբռնման վրա»։

1944 թ. օգոստոսի 20-ին Ուկրաինական 2-րդ և 3-րդ ռազմաճակատների զորքերը անցան նոր հարձակման։ Կարմիր Բանակի սրընթաց հարվածի շնորհիվ ջախջախվեց գերմանական բանակի դիմադրությունը

Յասսի քաղաքի շրջանում, ազատագրվեցին գերմանացիների պաշտպանության հզոր հանգույցների վերածված և դեպի Ռումինիա տանող մատույցները պաշտպանող հայրենի քաղաքներ՝ Քիշնև, Բելգորոդ-Դնեստրովսկի (Ակկերման), Իզմայիլը և բազմաթիվ այլ բնակավայրեր: Հանգիստ չտալով ջախջախված թշնամուն, մեր զորքերը գրավեցին Գալաց, Բրաիլով նավահանգիստները Դանուբի վրա, Բուզաու և Պլոեշտի գրավումով Գերմանիան զրկվեց նավթի մատակարարման իր հիմնական բազայից, գրավվեց Կոնստանցան և օգոստոսի 31-ին Կարմիր Բանակը հաղթականորեն մտավ Ռումինիայի մայրաքաղաք Բուխարեստը:

Գերմանական արկածնողների և նրա՝ ռումինական կամակատար՝ Անտոնեսկուի ֆաշիստական կլիկի դեմ օգոստոսի 23-ին Ռումինիայի մայրաքաղաքում քաղաքական խոշոր իրադարձություններ տեղի ունեցան: Անտոնեսկուի դիկտատուրան տապալվեց, կազմվեց նոր կառավարություն՝ գեներալ Կոնստանտին Սանատեսկուի գլխավորությամբ: Գեներալ Սանատեսկուի կառավարության կազմի մեջ մտել են Անտոնեսկուի պրոհիտլերյան քաղաքականության դեմ



օպոզիցիայի մեջ գտնվող պարտիաների ներկայացուցիչները: Գեներալ Սանատեսկուի նոր կառավարությունը դիմեց Սովետական Կառավարությանը, խնդրելով զինադադար: Միաժամանակ գեներալ Սանատեսկուի կառավարությունը ընդունեց 1944 թ. ապրիլի 12-ին Սովետական Կառավարության կողմից Անտոնեսկուի կառավարությանը ներկայացված և նրա կողմից մերժված զինադադարի պայմանները: Գեներալ Սանատեսկուի փորձերը՝ գերմանական զորքերը Ռումինիայի տերիտորիայից դուրս բերելու մասին, Գերմանիայի կողմից պատասխանվեց Բուխարեստի և ռումինական այլ քաղաքների օդային գազանային ռմբակոծությամբ և ռազմական գործողություններով, նպատակ ունենալով գրավել մայրաքաղաք Բուխարեստը և տապալել հակաֆաշիստական նոր կառավարությունը: Ռումինական նոր կառավարությունը պատերազմ հայտարարեց Գերմանիային և օգնում է Ռումինիայի տերիտորիան արագորեն գերմանական ազդեցությունից մաքրող և Ռումինիայի ժողովրդին ազատագրող Կարմիր Բանակի ուժերին:

Ռումինական ժողովրդին ուղղված ռումինական չորս դեմոկրատական պարտիա-

ների (նացիոնալ-լիբերալներ, նացիոնալ-ցարանիստական, կոմունիստական և սոցիալ-դեմոկրատական) կոչի մեջ ասված է. «Հինգ տարվա սպանդից հետո, մոտենում է հատուցման ժամը: Մոտեցող խաղաղությունը չպետք է մեզ գտնի այն մարդկանց կողմում, որոնք խախտեցին մեր սահմանները և ասեատուր էին անում մեր տերիտորիայով: Մենք պետք է մեր երեսից լվանանք հիտլերիզմի հետ համագործակցելու հետքերը, այն հաշվով, որպեսզի կանգնենք այն ուղու վրա, որը կապահովի մեզ հուսալի ապագա»:

1944 թ. սեպտեմբերի 12-ին Մոսկվայում կնքվեց զինադադարի Համաձայնագիր մի կողմից Սովետական Միության, Մեծ Բրիտանիայի ու Ամերիկայի Միացյալ Նահանգների և մյուս կողմից Ռումինիայի միջև: Զինադադարի Համաձայնագրի համաձայն վերականգնվում է ՍՍՌՄ-ի և Ռումինիայի միջև 1940 թվի հունիսի 28-ին կնքված սովետա-ռումինական համաձայնագրով սահմանված պետական սահմանը: Սովետական Կառավարության մեծահոգության շնորհիվ և հաշվի առնելով, որ Ռումինիան գործնականում իր զենքը դարձրել է Ֆաշիստական Գերմանիայի դեմ, մեր երկրում ռումինական



օկուպանտների կատարած ավերածությունների ու թալանի դիմաց, Սովետական Միությունը համաձայնվեց, որ Ռումինիան ոչ թե լրիվ, այլ մասամբ հատուցի այն վնասները, որոնք օկուպացիոն շրջանում պատճառվել են մեր երկրին, այն է՝ 300 միլիոն ամերիկյան դոլլար գումարի, որը մարվելու է 6 տարվա ընթացքում ապրանքներով: Ժողովուրդների թշնամի գերմանական բանակների արագ ջախջախման համար Համաձայնագիրը նախատեսում է Ռումինիայի ռազմատնտեսական կարևորագույն միջոցների օգտագործումը, ինչպես և ռումինական հետևակային 12 դիվիզիաների անմիջական մասնակցությունը Գերմանիայի և Հունգարիայի դեմ մղվող պատերազմում: Ցրելով և լիկվիդացնելով երկրում պրոհիտլերյան (ֆաշիստական) բոլոր քաղաքական, ռազմական և ռազմականացված կազմակերպությունները, միաժամանակ ձերբակալվելու և դատի են տրվելու պատերազմի նախաձեռնման հանցագործները: Երկրում վերականգնվում են դեմոկրատական ազատությունները, ինչպես և Համաձայնագրի այլ կարևորագույն միջոցառումները: Զինադադարի Համաձայնագիրը Կարմիր Բանակի հրաշալի հաղթանակների պտուղն է, մեծ

ժամանակ հանդիսանալով դաշնակից տերությունների համաձայնեցված գործողությունների և Գերմանիայի դեմ տարած հաղթանակներից մեկը:

Զինադադարի Համաձայնագիրը Ռումինիային վերադարձրեց իր կորցրած անկախությունը, որը փաստորեն ոչնչացվել էր Գերմանիայի կողմից:

Հիտլերյան Գերմանիայի ստրկացման լուծից Եվրոպայի ժողովուրդներին ազատագրող Կարմիր Բանակին ցնծությամբ են դիմավորում նաև Ռումինիայի ազատագրված քաղաքների և գյուղերի բնակիչները: Ինչպես պատմական անցյալում, նորից ռուս մեծ ժողովրդի օգնությամբ ռումինական ժողովուրդը ձեռք է բերում իր կորցրած անկախությունը, օգնում է իր ազատարար Կարմիր Բանակին՝ արագորեն ջախջախելու և Ռումինիայի տերիտորիայից դուրս շպրտելու ժողովուրդների թշնամի հիտլերյան Գերմանիայի բանակներին:

«Ռումինիան եղել է և մնում է Սովետական Միության հարևանը: Այժմ նա պետք է բոլոր հետևությունները անի այն դառն դասից, որով վերջացավ նրա մասնակցությունը ՍՍՌՄ-ի և նրա դաշնակիցների դեմ մղվող պատերազմին: Դրանով իսկ անհրա-



ժեշտ նախադրյալներ կստեղծվեն, որպեսզի այսուհետև Սովետական Միության և հարավ-արևմուտքի նրա հարևանի միջև վերականգնվեն նորմալ հարաբերությունները, որոնք պետք է զարգանան թե՛ այդ երկրների շահերի և թե՛ ընդհանուր ամուր խաղաղության շահերի համար» («Պրավդա»):

Դոցենտ՝ Ս. ԲԵՐԲԵՐՅԱՆ

---

# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԵԼ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Թղթակցությունը բոլշևիկյան մամուլի և առանձնապես թերթի միջոցով պանազան հարցեր առաջ քաշելու և լուծելու, աշխատավորության լայն խավերին թերթի հետ կապելու, նրանց աշխատանքը մոտիկից վեր հանելու լուրջ միջոց է հանդիսանում: Դա լրագրային ամենատարածված ժանրն է: Որպեսզի թերթը կարողանա թղթակցության միջոցով խորը մոտիկից և կոնկրետ լուսաբանել հարցերը, կազմակերպել ու մոբիլիզացնել աշխատավորներին, անհրաժեշտ է, որ թղթակցությունը լինի նպատակասլաց, հետաքրքիր, չվերածվի չոր ու ցամաք ինֆորմացիայի:

Բայց այդ կարող է լինել այն դեպքում, երբ թղթակիցը գիտե ոչ միայն այն, թե ինչի՛ մասին պետք է գրել, այլև այն, թե ի՛նչպես, ի՛նչ սկզբունքներով գրել կամ կազմել թղթակցությունը:

Մենք այստեղ խոսում ենք հատկապես թղթակցության, որպես լրագրային մի



ժանրի մասին այն պատճառով, որ մեր շրջանային թերթերը թղթակցություններ կազմելու հարցում լուրջ թերություններ ունեն և մենք նպատակ ունենք մի երկու օրինակի հիման վրա ցույց տալ թերթի աշխատողներին ու թղթակիցներին, թե ինչպե՛ս պետք է գրել կամ աշխատավորների նամակներից կազմել թղթակցություններ, որպեսզի դրանք համապատասխանեն մեր շրջանային մամուլի պահանջներին:

Թղթակցությունը պետք է գրել այն բանից հետո, երբ տվյալ հարցը, որի մասին պետք է գրվի, ամեն կողմից ուսումնասիրված է, բոլոր փաստերն ստուգված են և հեղինակը լրիվին ըմբռնում է իր գրելիք նյութը:

Ամենաառաջին պահանջը, որ ներկայացվում է թղթակցություն գրողին կամ կազմողին, այն է, որ ամեն մի առանձին թղթակցության մեջ պետք է խոսել որևէ կոնկրետ հարցի մասին: Ընթերցողն այդ թղթակցությունը կարդալուց հետո կկարողանա պարզ հասկանալ, թե հեղինակն ի՞նչ կոնկրետ հարց է առաջ քաշում, ինչի՞ վրա է առանձնապես ուշադրություն հրավիրում, ի՞նչ է պահանջում: Չի կարելի միևնույն թղթակցության մեջ խոսել

բազմապիսի հարցերի մասին, որոնք օրգանական կապ չունեն գլխավոր հարցի հետ: Այլ հարց է, որ այն կենտրոնական թեման, որ առաջ է քաշում հեղինակը, պետք է պարզաբանի բոլոր կողմերով: Եթե նա քննադատում է, պետք է ասի, թե ինչո՞ւ է տվյալ բացասական երևույթը տեղի ունեցել, ո՞վ է դրա համար մեղավորը, միշտ ի նկատի ունենա, որ զանազան հարցերի ետև կանգնած են կենդանի մարդիկ: Եթե հեղինակը բերում է որևէ թիվ, պետք է ամբողջապես պարզաբանի դրա էությունը: Թվերի տակ թաքնված են փաստեր, կենդանի գործ:

Շրջանային թերթի խմբագիրներից շատերը հաճախ չեն նկատում ինֆորմացիայի և թղթակցության տարբերությունը:

Ինֆորմացիան միայն նկարագրում է այս կամ այն փաստը, արձանագրում, թվեր ու անուններ բերում, բայց որևէ հարց չի առաջ քաշում, որևէ կազմակերպության կամ աշխատողի առաջ պահանջներ չի առաջադրում:

Թղթակցությունը բաց է անում այս կամ այն երևույթի պատճառները, պահանջներ է առաջադրում, քննադատում է կամ խրա-



խոսում, բազմակողմանիորեն վերլուծում որևէ երևույթ կամ փաստ: Սա չի նշանակում, թե թղթակցությունը պետք է երկար լինի, ինֆորմացիան՝ կարճ: Այստեղ որոշողը ծավալը չէ, այլ բովանդակությունը, բնույթը:

Ախտայի շրջանի թերթը («Լենինի դրոշով») իր հունիսի 1-ի համարում տպագրել է «Ձմռանը գործարքային աշխատանքի առավելությունը» վերնագրով մի թղթակցություն: Եթե դատենք վերնագրից, բարձրացվող հարցը չափազանց ակտուալ է, բերքահավաքի կազմակերպման կարևոր հարցերից մեկը, որովհետև գործավարձի ճիշտ կազմակերպումը՝ նշանակում է արտադրության բարձրացում: Բայց տեսնենք թերթն ինչպե՞ս է կարողացել լուծում տալ այս հարցին: Բերում ենք թղթակցության լրիվ տեքստը:—

«Ձմռանը գործարքային աշխատանքի առավելությունը

Ալափարս գյուղում ակտիվ է ցանքերի քաղհանը, բայց այն ընթանում է անկազմակերպ: Կոպիտ կերպով խախտվում է անհատական գործարքը, որի հետևան-

քում քաղհանի աշխատանքը դանդաղ է ընթանում: Կոլխոզի «Արմալու» կոչված սատանայի սարի ցանքադաշտի քաղհանող օղակում աշխատում է 40 հոգի: Այդ է պատճառը, որ քաղհանավորների մեծ մասը թողած իրենց հիմնական աշխատանքը, զբաղվում են բանջար հավաքելով: Դեռ ավելին: Այստեղ քաղհանավորներից շատերն ամբողջ օրը նստած «հանգստանում» են, իսկ ո՞ր ժամին պետք է քաղհան կատարել, այդ դժվար է իմանալ:

Ժամանակն է, որ շրջանի հողային օրգանների ղեկավարները և ագրոպերսոնալը, կոլխոզի ղեկավարների հետ միասին, հսկեն քաղհանի աշխատանքներին՝ բարելավելու այն»:

Ինչպես տեսնում ենք, գործավարձի մասին այստեղ միայն մի նախադասություն կա, այն էլ ընդհանուր, ոչինչ չասող: Գործավարձի խախտման ինչպիսի՞ կոնկրետ փաստեր են տեղ գտել օղակի աշխատանքում, ովքե՞ր են խախտողները, ինչպե՞ս պետք է ճիշտ կիրառել գործավարձը,— թղթակիցն այս հարցերին չի պատասխանում: Ընդհակառակը, թե՛ նա և թե՛ թեր-



թի խմբագիրը չեն հասկացել այդ թղթակցության կենտրոնական հարցը: Նրանք այդ մի քանի տողանոց թղթակցության մեջ գրել են ամեն տեսակ բաների, բայց ոչ անհատական գործավարձի մասին, այնպես, որ վերնագիրը մնացել է լոկ որպես ցուցանակ: Թղթակցի կամ խմբագրի եզրակացությունը նույնպես ճիշտ չի կարելի համարել, որովհետև եթե խոսվում է օղակի աշխատանքի վատ կազմակերպման մասին, իսկ օղակի անմիջական ղեկավարները օղակավարն ու բրիգադիրն են, որոնք էլ պետք է պատասխանատվություն կրեն գործը վատ կազմակերպելու համար: Այսպիսի թղթակցությունը չի կարող կազմակերպել ու մոբիլիզացնել մարդկանց:

Բայց ահա մեկ ուրիշ թղթակցություն, որից ընթերցողը հասկանում է հոդվածի նպատակը, կենդանի պատկերացում է կազմում այդ երևույթի պատճառների մասին, նրա մեջ տրամադրություն է առաջանում՝ պատժել իր գործին այդքան անհոգի վերաբերմունք ցույց տվող աշխատողին: Թղթակցությունը տպագրված է Ստեփանավանի շրջանային թերթի («Սոցիալիս-

տակյան անասնապահություն») Հունիսի 22-ի համարում: Բերում ենք այն նույնությամբ.—

«Ինձ համար այստեղ լավ է»

Մեկ ամսից ավելի է, ինչ Լեջան գյուղի կոլխոզի կաթնաանասնաբուծական ֆերման յայլա է փոխադրվել: Հակառակ կոլխոզի ղեկավարների սպասածի՝ ամառային հյութալի արոտավայրում զգալիորեն իջել է կովերի կաթնատվությունը: Մայիս ամսին ստացվող 760 կիլոգրամ կաթի փոխարեն, այժմ ֆերմայից օրական հազիվ 500 կիլոգրամ կաթ է ստացվում: Հյուծվել է նաև հորթերի մի մասը: Շատ տեղերում արոտավայրերը հավասարվել են ցեխի հետ:

Եվ այս բոլորը կատարվել է ֆերմայի վարիչ Մարկոս Բաբլումյանի հանցանքով, որն ինքնահոսի է թողել յայլայում կազմակերպվելիք աշխատանքները և ամբողջ օրը թրև է գալիս գյուղի փողոցներում:

Ղեկավարության բացակայության հետևանքով, անասնապահները կովերին արոտ են քշում միայն առավոտյան ժամը 8-ին, երեկոյան կիթ են բերում դեռ ա-



րևը մայր չմտած, ուր և նրանք մնում են ամբողջ գիշերը:

Արոտավայրերն օգտագործվում են անխնամ, կովերին ժամանակին ջուր չի տրվում: Շատ հաճախ հորդ. անձրևների տակ են մնում մատղաշ հորթերն ու գոմշաձագերը:

Իսկ երբ ազնիվ աշխատող կոլխոզնիկները ֆերմայի այդ «պատվարժան» վարիչին հարցնում են, թե ինչո՞ւ ես գյուղում և ոչ թե ֆերմայում, նա պատասխանում է.— Ինձ համար այստեղ լավ է:

Լեջան գյուղի կոլխոզի վարչությունը և պարտկազմակերպությունը պետք է կտրուկ միջոցառումներ գտնեն Ս. Բաբլումյանից ֆերման ազատելու համար»:

Ի հարկե, թղթակցության համար չկան վերջնականապես որոշված, սահմանագծված ինչ որ շրջանակներ, որից թերթի աշխատողն իրավունք չունի դուրս գալու: Ընդհակառակը, եթե գոյություն ունեն այդպիսի սահմաններ, ապա դրանք շատ ընդարձակ են և ստեղծագործական աշխատանքի լայն հնարավորություններ են տալիս. միայն թե ամենափոքրիկ թղթակցության կազմողն էլ պետք է շատ լուրջ վերաբերվի իր աշխատանքին, կշռադատի յու-

րաքանչյուր նախադասությունն ու բառը, մտքերի ճիշտ հաջորդականությունն ու դասավորությունը և լուրջ վերաբերվել լեզվին, գրի այնպես, որ կարելի լինի քիչ խոսքերով շատ բան ասել, ասել պարզ ու գրագետ, գեղեցիկ և սահուն լեզվով, խուսափել ընդհանուր ֆրազներից, լեզվական շաբլոնից, գեղեցիկ թվացող բառերի անտեղի գործածությունից:

Եթե թղթակցությունը գրված է անգրագետ լեզվով, նա փոխանակ կազմակերպելու ընթերցողների մտքերը, ծիծաղ է առաջացնում, գցում է թերթի հեղինակությունը, և, ընդհակառակը, չափազանց մեծ է գրական պարզ, հյութեղ լեզվով գրված թղթակցության ուժը:

Թերթի աշխատողները լեզվի պարզության գործի ամենաակտիվ մասնակիցներն են: Նրանց անգրագիտությունը միանգամայն աններելի է:

Այսպես ուրեմն, ամեն մի թղթակցություն գրող կամ կազմող պետք է լրիվ ուսումնասիրի և տիրապետի իր գրելիք նյու-



թյուն, կոնկրետացնի այն, տարբերի գլխավորն ու առաջնակարգը երկրորդականից, ստուգի, ճշտի եղած թվերն ու փաստերը, ճիշտ դասավորի իր մտքերը, և վերջապես ամենալուրջ ուշադրություն դարձնի լեզվի վրա:

Զ. ՂՈՒԿԱՍՅԱՆ

---

# ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ԹԵՄԱՏԻԿ ՊԼԱՆ

## I. ԸՆԹԱՑԻԿ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ

1. Հայրենական մեծ պատերազմի ընթացիկ մոմենտը:
2. ՍՍՌՄ-ի միջազգային դրությունը:
3. Կարմիր Բանակի պատմական հաղթանակները:
4. Ֆրանսիայի համար մղվող ճակատամարտը:
5. Պատերազմը Խաղաղ օվկիանոսում:
6. Չեզոք երկրները (Թյուրքիա, [redacted] Իսպանիա, Շվեդիա և այլն):
7. Լեհ ժողովուրդը Լեհաստանի ազատության և անկախության համար մղվող պայքարում:
8. Դաշնակիցների պատերազմական գործողությունները Եվրոպայում:
9. Սովետական պարտիզանների դերը սովետա-գերմանական ռազմաճակատում գերմանա-ֆաշիստական զորքերին ջախջախելու գործում:



10. Հիտլերյան պլանների վիժումը Բալկաններում:
11. Ռումինիայի դուրս գալը պատերազմից և զինադադարի պայմանագրի կնքումը:
12. Ֆինլանդիայի դուրս գալը պատերազմից և զինադադարի պայմանագրի կնքումը:
13. Ռուս և բուլղար ժողովուրդների պատմական բարեկամությունը:
14. Հարավսլավիայի ժողովուրդների հերոսական պայքարը ընդդեմ գերմանական զավթիչների:
15. Գերմանիայի ներքաղաքական դրությունը:
16. Գերմանական ավազակային իմպերիալիզմի խորտակումը:
17. Սովետական պետությունը Հայրենական պատերազմի տարիներին:
18. Հիտլերյան ոճրագործների քրեական պատասխանատվության մասին:

## II. ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԿԼԱՍԻԿՆԵՐԻ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1. ԼԵՆԻՆ. Ինչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպես են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ:
2. ԼԵՆԻՆ. «Ինչ անել»:
3. ԼԵՆԻՆ. Մի քայլ առաջ՝ երկու քայլ ետ:
4. ԼԵՆԻՆ. Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ:
5. ԼԵՆԻՆ. Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ:
6. ԼԵՆԻՆ. Պետություն և ռևոլյուցիա:
7. ՍՏԱԼԻՆ. Մարքսիզմը և ազգային գաղութային հարցը:
8. ՍՏԱԼԻՆ. Լենինիզմի հիմունքների մասին:
9. ՍՏԱԼԻՆ. Հոկտեմբերյան ռևոլյուցիան և ռուս կոմունիստների տակտիկան:
10. ՍՏԱԼԻՆ. Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին:

## III. ՊԱՏՄԱ-ՊԱՐՏԻԱԿԱՆ ՑԻԿԼ

1. Բոլշևիկների պարտիան որպես օտարերկրյա զավթիչների դեմ սովետական ժողովրդի հաղթանակների կազմակերպիչ



քաղաքացիական պատերազմների տարիներին:
2. Լենինը և Ստալինը որպես Կարմիր Բանակի կազմակերպիչներ ու առաջնորդներ:
3. Ցարիցինի 1918 թ. պաշտպանության ստալինյան պլանը և Ստալինգրադի հերոսական էպոպեան:
4. Բոլշևիկների պարտիան՝ մեր երկրի սոցիալիստական ինդուստրացման համար մղվող պայքարում:
5. Ստալինյան հնգամյակների վճռական նշանակությունը մեր տեխնիկա-տնտեսական անկախությունն ապահովելու գործում:
6. Բոլշևիկների պարտիան գյուղատնտեսության կոլեկտիվացման համար մղվող պայքարում:
7. Կոլխոզային կարգը որպես սովետական ժողովրդի հզոր հենարան գերմանական զավթիչների դեմ մղվող պայքարում:
8. Բոլշևիկյան պարտիան որպես գերմանական զավթիչների դեմ մղվող Հայրենական մեծ պատերազմում ժողովրդի հաղթանակների կազմակերպիչ ու ոգեշնչող:

9. Լենինը և Ստալինը արդարացի և անարդարացի պատերազմների մասին:

## IV. ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՑԻԿԼ

1. Իդեալիստական դիալեկտիկայի և մարքսիստական դիալեկտիկական մեթոդի հակադրությունը:
2. Մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմի հիմնական գծերը:
3. Մարքսիստական մատերիալիստական դիալեկտիկայի հիմնական գծերը:
4. Անհատի և առաջավոր գաղափարների դերը հասարակական զարգացման մեջ:
5. Լենինյան էտապը փիլիսոփայության զարգացման մեջ:
6. Մարքսիստական-լենինյան փիլիսոփայության զարգացումը Ստալինի կողմից:
7. Ռուսական փիլիսոփայության կլասիկները (Լոմոնոսով, Գերցեն, Բելինսկի, Չերնիշևսկի, Դոբրոլյուբով, Պլեխանով):
8. Մարքսիստական-լենինյան ուսմունքը պետության մասին:



## V. ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՑԻԿԼ

1. Սոցիալիստական էկոնոմիկան պատերազմի օրերին:
2. Սովետական արդյունաբերությունը Հայրենիքի պաշտպանության գործում:
3. Նյութական ռեսուրսների և բանվորական ուժի վերաբաշխումը պատերազմի օրերին:
4. Խստագույն խնայողությունը որպես պատերազմական ժամանակի օրենք:
5. Արտադրանքի ինքնարժեքը ձեռնարկության աշխատանքի հայելին է:
6. Աշխատանքի արտադրողականության աճման աղբյուրները:
7. Առանձին երկրների սոցիալ-տնտեսական և քաղաքական տեսությունը (Ռումինիա, Հունգարիա, Բուլղարիա, Ֆինլանդիա, Թյուրքիա):

## VI. ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

1. Հայ և ռուս ժողովուրդների մեծ բարեկամությունը:
2. Ռուս մեծ զորավարները և ծովակալները (Սուվորով, Կուտուզով, Նախիմով, Ուշակով և ուրիշներ):
3. Հայ ժողովրդի հերոսական անցյալից:

4. Հայաստանի միացումը Ռուսաստանին և դրա պատմական նշանակությունը։
5. Հայ զորավարների մասնակցությունը 1812 թ. հայրենական պատերազմին։
6. 1812 թվի հայրենական պատերազմը։
7. Ալեքսանդր Նևսկին, Դմիտրի Դոնսկոյը, Մինինն ու Պոժարսկին։
8. Գերմանիայի ջախջախումը 1918 թվին։
9. Բրյուսիլովյան ճեղքումը։

## VII. ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԵՎ ԱՐՎԵՍՏԻ ՀԱՐՑԵՐ

1. Ռուսական կուլտուրայի միջազգային նշանակությունը։
2. Մեծ դեմոկրատ ռևոլյուցիոներներ Բելինսկին, Չերնիշևսկին, Դոբրոլյուբովը։
3. Սովետական գրականությունը աշխարհիս ամենագաղափարական և ամենաառաջավոր գրականությունն է։
4. Կրիլովի կյանքն ու գործունեությունը (մահվան 100-ամյակի առթիվ)։

## VIII. ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ-ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ

1. Սովետական երիտասարդությունը հայրենիքի համար մղվող մարտերում։
2. Սովետական երիտասարդության հերոսական աշխատանքը թիկունքում։



3. Կոմերիտմիությունը Համկ(բ)Պ մարտական ռեզերվն ու հավատարիմ օգնականն է։
4. Լենինյան-կոմերիտմիության դաստիարակության հերոսական կերպարները (Զոյա Կոսմոդեմյանսկայա, Լիզա Չայկինա, Ալեքսանդր Չեկալին, Սոսնովսկի, Սերգեյ Օգանով և ուրիշներ)։

---

> *Մարքսիստական-լենինյան թեորիայի ուժը կայանում է նրանում, որ նա պարտիային հնարավորություն է տալիս կողմնորոշվելու իրադրության մեջ, ըմբռնելու շրջապատող դեպքերի ներքին կապը, նախատեսելու դեպքերի ընթացքը և ճանաչելու ոչ միայն այն, թե ինչպես և դեպի ո՛ւր են զարգանում դեպքերը ներկայումս, այլև այն, թե ինչպես և դեպի ո՛ւր են զարգանալու նրանք ապագայում։*
>
> *(«Համկ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց»)։*

# «ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ԴԱՍԸՆԹԱՑԸ» ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ ՕԳՆՈՂ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԿ

## ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

## «ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ԴԱՍԸՆԹԱՑԻ»

*Պարտիական պրոպագանդայի դրվածքի մասին «Համկ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» լույս ընծայման կապակցությամբ Համկ(բ)Պ Կենտկոմի* 1938 *թվի նոյեմբերի* 14-*ի որոշումը։ Հայպետհրատ,* 1938 *թ.*, 30 *էջ։*



*ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Բոլշևիզմի պատմության մի քանի հարցերի մասին։ (Նամակ* «Пролетарская революция» *ժուռնալի խմբագրությանը)։* 1931 *թիվ։ Լենինիզմի հարցերը.* 11 *հրատ., էջ* 429—442։

*ՍՏԱԼԻՆ Ի., ԺԴԱՆՈՎ Ա., ԿԻՐՈՎ Ս.— Դիտողություններ ՍՍՌՄ պատմության դասագրքի կոնսպեկտի առթիվ (օգոստոսի* 8-*ին,* 1934 *թ.)։ Հայպետհրատ,* 1936 *թ.*, 43 *էջ։*

*ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Համկ(բ)Պ պատմության դասագրքի մասին։ Նամակ Համկ(բ)Պ պատմության դասագիրք կազմողներին։* 1937 *թ. «Համկ(բ)Պ պատմության ուսումնասիրման շուրջը» գրքում, էջ* 23—32։ *Հայպետհրատ,* 1937 *թ.*, 32 *էջ։*

*ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Հաշվետու զեկուցում պարտիայի* 18*-րդ համագումարում Համկ(բ)Պ Կենտկոմի աշխատանքի մասին; մարտի* 10*-ին,* 1939 *թ.*, 3*-րդ գլուխ, Համկ(բ)Պ հետագա ամրապնդումը։ Լենինիզմի հարցերը,* 11*-րդ հրատարակություն, էջ* 720—742։

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— *Դարձյալ սոցիալ-դեմոկրատական թեքման մասին մեր պարտիայի մեջ: Զեկուցում ԿԻԳԿ 7-րդ ընդլայնված պլենումում, 1926 թ. դեկտեմբերի 7—13-ը: Հայպարտհրատ, 1935 թ., 329 էջ:*

## ԳԼՈՒԽ I

## ՊԱՅՔԱՐ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՊԱՐՏԻԱ ՍՏԵՂԾԵԼՈՒ ՀԱՄԱՐ

(1883—1901 *թվականները*)

### 1. Ճորտատիրական իրավունքի վերացումը և արդյունաբերական կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում:

Ժամանակակից արդյունաբերական պրոլետարիատի առաջ գալը: Բանվորական շարժման առաջին քայլերը:

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— *Ռուսաստանի մասին, Մարքսը Ֆ. Զորգեին. սեպտեմբերի 27, 1877 թ.: Ֆ. Էնգելս. Ռուսաստանի հասարակական հարաբերությունների մասին: 1875 թ., 1894 թ. Կ. Մարքսի «Ընտիր երկեր երկու հատորում», երկրորդ հատոր, էջ 664—683: Հայպետհրատ, 1941 թ., 718 էջ:*



ЛЕНИН В. И.— По поводу юбилея. 1911 г. Соч. т. XV, стр. 93—99.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— *Ճորտատիրական իրավունքի անկման 50-ամյակը: 1911 թ.: Լենին Վ. Ի. և Ստալին Ի. Վ.— «ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրման շուրջը» գրքում: Պրակ 1-ին, էջ՝ 17—21, Հայպետհրատ, 1938 թ., 127 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— *«Գյուղացիական ռեֆորմը ու պրոլետարաբեն-գյուղացիական ռևոլյուցիան»: 1911 թ., «Ընտիր երկեր երկու հատորում», I հատ., էջ՝ 567—577:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— *Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում: 1896—1899 թ.թ.: Երկեր, հատ. 3-րդ, էջ՝ 11—691:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— *Ագրարային հարցը Ռուսաստանում 19-րդ դարի վերջին: 1908 թ.: Ընտիր երկեր 6 հատորի մեջ: Հատ. I, էջ՝ 1—76:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— *Գյուղական չքավորությանը (բացատրություն գյուղացիության համար, թե ինչ են ուզում սոցիալ-դեմոկրատները): 1903 թիվ: «Ընտիր երկեր» 6 հատորի մեջ: Հատ. I, էջ՝ 612—680:*

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Այսպես կոչված շուկաների հարցի առթիվ*: 1893 *թ.*: *Երկեր*, 4-*րդ հրատարակություն*, *հատ.* I, *էջ՝* 77—140:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ֆաբրիկաներում ու գործարաններում բանվորներից գանձվող տուգանքների օրենքի բացատրությունը*: 1895 *թ.*: *Երկեր*, 4-*րդ հրատարակություն*, *հատ.* II, *էջ՝* 19—76:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գործադուլների մասին*: 1899 *թ.*: *Լենին—Ստալին.— «Ընտիր երկեր» մի հատորի մեջ*, I *պրակ*, *էջ՝* 76—87:

*ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Ոչ թե ցարական բարենորոգում, այլ ժողովրդական ռևոլյուցիա*: 1906 *թիվ*: *«ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրման շուրջը» գրքում*, *պրակ* I, *էջ՝* 22—25: *Հայպետհրատ*, 1938 *թ.*:

Устав «Южно-Российского Союза Рабочих», 1875 г. Ленин В. И.—Соч. т. II. Приложения, стр. 620—621 к русским рабочим (Программа «Северного Союза Русских Рабочих 1878 г.»).



Ленин В. И.—Соч. т. II Приложения, стр. 609—611.

2. Նարոդնիկությունն ու մարքսիզմը Ռուսաստանում: Պլեխանովը և նրա «Աշխատանքի ազատագրություն» խումբը: Պլեխանովի պայքարը նարոդնիկության դեմ: Մարքսիզմի տարածումը Ռուսաստանում:

*ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Կոմունիստական պարտիայի մանիֆեստը*: 1847—1848 *թ. թ.*: *Հայպետհրատ*, 1938 *թ.*, 134 *էջ*:

*ՄԱՐՔՍ Կ.— Վարձու աշխատանք և կապիտալ*: 1847 *թ.*: *Կարլ Մարքսի «Ընտիր երկեր երկու հատորում»*, *հատ.* I, *էջ՝* 268—309:
*պարտհրատ*, 1932 *թ.*, 43 *էջ*:

*ԷՆԳԵԼՍ Ֆ.— Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն*: 1877—1878 *թ. թ.*: *Կարլ Մարքսի «Ընտիր երկեր երկու հատորում»*: *Հատ.* I, *էջ՝* 211—267:
*Հայպետհրատ*, 1940 *թ.*, 66 *էջ*:

*ԷՆԳԵԼՍ Ֆ.— Ճառ Մարքսի գերեզմանի վրա*: 1883 *թ.*: *Կարլ Մարքսի «Ընտիր երկեր երկու հատորում»*: *Հատ.*

I, էջ 14—16: Պարտհրատ, 1933 թ., 31 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կարլ Մարքս: 1914 թ. Վ. Ի. Լենինի «Կ. Մարքս և Ֆ. Էնգելս» գրքում, էջ 5—52: Կարլ Մարքսի «Ընտիր երկեր երկու հատորում», հատ. I, էջ 17—49: Հայպետհրատ, 1939 թ., 79 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ֆրիդրիխ Էնգելս: 1895 թ.: Երկեր, 4-րդ հրատարակություն: հատ. II, էջ 1—17:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մարքսիզմի երեք աղբյուրներն ու երեք բաղկացուցիչ մասերը: 1913 թ.,«Ընտիր երկեր» երկու հատորում: Հատ. I, էջ 51—57: Կարլ Մարքսի «Ընտիր երկեր երկու հատորում», հատ. I, էջ 50—55:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մանր բուրժուական և պրոլետարական սոցիալիզմ: 1905 թ.: Երկեր, հատ VIII, էջ 512—522:

ЛЕНИН В. И.—Проект программы нашей партии, 1899 г. соч., т. II, стр. 505—528.

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինիզմի հիմունքների մասին (1924 թ. ապրիլի սկզբին Սվերդլովյան համալսարանում կարդացած դասախոսությունները): I. Լենինիզմի պատմական արմատները: Լենինիզմի հարցերը, հրատարակութ. 11-րդ, էջ 11—17:



Ռուսական սոցիալ-դեմոկրատների ծրագրի նախագիծը, որ կազմել է «Աշխատանքի ազատագրություն» խումբը: 1887 թ.: Լենին Վ. Ի. և Ստալին Ի. Վ.— ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրման շուրջը գրքում: Պրակ I, էջ 108—112:

ՊԼԵԽԱՆՈՎ Գ. Վ.— Սոցիալիզմը և քաղաքական պայքարը: 1883 թ.: Մեր տարաձայնությունները: 1885 թ.: Հայպետհրատ, 1939 թ., 442 էջ:

ՊԼԵԽԱՆՈՎ Գ. Վ.— Պատմության նկատմամբ մոնիստական հայացքի զարգացման հարցի շուրջը: 1894 թ.: Հայպետհրատ, 1939 թ., 374 էջ:

ՊԼԵԽԱՆՈՎ Գ. Վ.— Պատմության մատերիալիստական ըմբռնման մասին: 1897 թ.: Հայպետհրատ, 1939 թ., 52 էջ:

ՊԼԵԽԱՆՈՎ Գ. Վ.— Պատմության մեջ անհատի ունեցած դերի հարցի շուրջը: 1898 թ.: Հայպետհրատ, 1939 թ., 54 էջ:

### 3. Լենինի ռևոլյուցիոն գործունեության սկիզբը: Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը»:

*ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինն իբրև ՌԿՊ կազմակերպիչ և առաջնորդ (հոդված Լենինի ծննդյան 50-ամյակի առթիվ):* 1920 *թ.: Ի. Ստալին. «Լենինի մասին» գրքում, էջ՝* 3—11: *Հայպետհրատ,* 1939 *թ.,* 50 *էջ:*

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրման պայքարի միության» թռուցիկները:* 1895—1896 *թ. թ.: Տորնտոնի գործարանի բանվորներին և բանվորուհիներին: Ցարական կառավարությանը: Երկեր, 4-րդ հրատարակություն. Հատ. II, էջ՝* 88—94:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալ-դեմոկրատական պարտիայի ծրագրի նախագիծն ու բացատրությունը:* 1895—1896 *թ. թ.: Երկեր, 4-րդ հրատարակություն: Հատ. II, էջ՝* 103—141:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ֆաբրիկային նոր օրենքը:* 1897 *թ.: Երկեր, 4-րդ հրատարակություն: Հատ. II, էջ՝* 331—395:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռուսական սոցիալ-դեմոկ-*



*րատների խնդիրները:* 1897 *թ.: «Ընտիր երկեր երկու հատորում»: Հատ. I, էջ՝* 147—168:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Իվան Վասիլևիչ Բաբուշկին (նեկրոլոգ):* 1910 *թ.: Լենինը և Ստալինը երիտասարդության մասին ժողովածուի մեջ, էջ՝* 172—176: *Հայպետհրատ,* 1939 *թ.,* 390 *էջ:*

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մի քանի խոսք Ն. Ե. Ֆեդոսեևի մասին:* 1922 *թ.: Երկեր, հատ. XXVII, էջ՝* 500—502:

*ԲԵՐԻԱ Լ. Պ.— Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը: Գլուխ I, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների սկզբնավորման և ձևավորման պատմության շուրջը* (1897—1904 *թ. թ.), էջ՝* 13—53: *Հայպարտհրատ,* 1936 *թ.,* 217 *էջ:*

### 4. Լենինի պայքարը նարոդնիկության և «Լեգալ մարքսիզմի» դեմ: Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի լենինյան գաղափարը: Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի I համագումարը:

*ԼԵՆԻՆ Վ. Ի. Ի՞նչ են «Ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մար-*

ռվում սոցիալ-դեմոկրատների դեմ (պատասխան «Русское богатство»-ի մարքսիզմի դեմ ուղղված հոդվածներին): 1894 թ.: Հայպետհրատ, 1939 թ. 253 էջ: Երկեր, 4-րդ հրատարակություն, հատ. I, էջ 143—416:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Նարոդնիկության տնտեսական բովանդակությունը ու նրա քննադատությունը Պ. Ստրուվեի գրքում: (Մարքսիզմի արտացոլումը բուրժուական գրականության մեջ): 1894 թ.: Երկեր, 4-րդ հրատարակութ., հատ, I, էջ 417—652:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ո՞ր ժառանգությունից ենք հրաժարվում մենք: III «Ժառանգությունը» շահե՞ց արդյոք նարոդնիկության հետ կապ ունենալուց: 1897 թ.: Երկեր, 4-րդ հրատարակություն: Հատ. II, էջ 656—671:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մանր բուրժուական և պրոլետարական սոցիալիզմ: 1905 թ.: Երկեր, հատ. VIII, էջ 512—522:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գերցենի հիշատակին: 1912 թ.: «Ընտիր երկեր երկու հատորում»: Հատ. I, էջ 819—826:



ԼԵՆԻՆ Վ. Ի.— Նարոդնիկության մասին: 1913 թ.: «Ընտիր երկեր» երկու հատորում: Հատ. I, էջ 591—596:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Անարխի՞զմ, թե սոցիալիզմ (հոդվածներ 1906—1907 թ. թ.): Քաղվածքներ Լ. Պ. Բերիայի «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը» գրքում, էջ 96—100: Հայպետհրատ, 1936 թ., 217 էջ:

5. Լենինի պայքարը «էկոնոմիզմի» դեմ: Լենինյան «Искра» լրագրի երևան գալը:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռուսական սոցիալ-դեմոկրատների խնդիրները: 1897 թ.: «Ընտիր երկեր» երկու հատորում: Հատ. I, էջ 147—168: Երկեր, 4-րդ հրատարակություն: Հատ. II, էջ 407—443:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռուսական սոցիալ-դեմոկրատների բողոքը: 1899 թ.: «Ընտիր երկեր» 6 հատորի մեջ: Հատոր I, էջ 370—383:

ЛЕНИН В. И.—Наша программа. Соч. т. II. стр. 491—494.

ЛЕНИН В. И.—Наша ближайшая задача 1899. Соч. т. II, стр. 495—499 (517—521).

Ленин В. И.—Насущный вопрос 1899 г. соч. т. II. стр. 500—504.

ЛЕНИН В. И.—Попятное направление в русской социал-демократии, 1899 г. соч., т. II, стр. 529—556..

ԼԵՆԻՆ Վ. Ի.—«Искра»-յի խմբագրության հայտարարությունը: 1900 թ.: Վ. Ի. Լենին և Ի. Վ. Ստալին «Համ. Կ(բ)Պ պատմության ուսումնասիրման շուրջը» գրքում: Պրակ I, էջ 94—100: Հայպետհրատ, 1938 թ., 127 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Թե ինչպես քիչ էր մնում, որ «Искра»-ն հանգչեր: 1900 թ.: Պարտհրատ, 1934 թ., 39 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մեր շարժման կենսական խնդիրները: 1900 թ.: «Ընտիր երկեր» 6 հատորի մեջ: Հատ. I, էջ 388—394:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինիզմի հիմունքների մասին (1924 թ. ապրիլի սկզբին Սվերդլովյան համալսարանում կարդացած դասախոսությունները), III—Թեորիան բ)— Տարերայնության «թեորիայի» քննադատությունը կամ



ավանգարդի դերը շարժման մեջ: Լենինիզմի հարցերը, հրատարակութ. 11-րդ, էջ 25—39:

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին.— Համառոտ կենսագրություն (ՀամԿ(բ)Պ Կենտկոմին կից Մարքսի—Էնգելսի—Լենինի Ինստիտուտ). I մաս: Հայպետհրատ, 1940 թ., 110 էջ:

---

# ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԽՐՈՆԻԿԱ

★ *Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները ամենուրեք մասսայականացնում են Մոսկվայի Ստալինի անվան Լենինի շքանշանակիր Ավտոգործարանի կոլեկտիվի դիմումը ուղղված Սովետական Միության ձեռնարկությունների բոլոր աշխատողներին նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության կազմակերպելու մասին: Այդ դիմումը, որ լիովին արտահայտում է բոլորի ցանկությունը, լայն արձագանք է գտել:*

*Մոսկվացիների օրինակով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ են մտել Ս. Մ. Կիրովի անվան, Ձեթ-օ-ճառ, «Արարատ», Կոնսերվի, Մեխանիկական, Մեքենաշինական և մյուս գործարանների աշխատավորները: Կոնսերվի գործարանում ստախանովական աշխատող ընկ. Ս. Կարապետյանը մրգի ցեխի բանվորուհիներին առաջինը ծանոթացրեց մոսկվացիների դիմումին:*



*— Մեր երկրի ժողովուրդները պանծալի տարեդարձը դիմավորում են Հայրենական պատերազմի ճակատներում և թիկունքում տարած փառապանծ հաղթանակներով,— ասում է ընկ. Կարապետյանը,— դրա համար մենք պետք է լարենք մեր բոլոր ուժերը՝ երկրին ավելի շատ արտադրանք տալու, ընթացիկ տարվա պլանը ժամկետից շուտ կատարելու համար:*

★ *Երևանի Սպանդարյան ռայոնի տնային տնտեսուհիները ուսումնասիրում են ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ «Հղի կանանց, բազմազավակ և միայնակ մայրերին տրվող պետական օգնությունն ավելացնելու, մայրության և մանկության պահպանությունն ուժեղացնելու, «Հերոսուհի մայր» պատվավոր կոչում սահմանելու, «Մայրական փառք» շքանշան և «Մայրական մեդալ» մեդալ հիմնելու մասին»:*

*Սեպտեմբերի 5-ին տնային տնտեսուհիների հավաքում վերոհիշյալ Հրամանագիրը կարդաց ու բացատրեց վաստակավոր արտիստուհի ընկ. Տ. Սպանդարյանը:*

★ *Նույն Հրամանագիրը ընթերցվել է*

նաև Լենինականի քաղաքի տնային տնտեսուհիների հավաքում:

★ Ռեսպուբլիկայի դպրոցներում մասսայականացված է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ Սովետական Միության Հերոսներ դաստիարակած Հայկական ՍՍՌ միջնակարգ դպրոցները Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի պատվոգրով պարգևատրելու մասին:

★Սովետական Ինֆորմբյուրոյի հաղորդագրությունները նույն օրը գյուղ հասցնելու ուղղությամբ ուսանելի գործ է կատարել ՀԿ(բ)Պ Ալավերդու շրջկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժինը (բաժնի վարիչ ընկ. Զանինյան): Շրջանի հեռախոս ունեցող բոլոր գյուղերում պարտիական սկզբնական կազմակերպությունների ագիտատորներից առանձնել են հերթապահություն. ամեն առավոտ, ժամը 9—10-ը, պարտկաբինետի վարիչ ընկ. Հ. Հարությունյանը բոլոր գյուղերին հաղորդում է Սովետական Ինֆորմբյուրոյի ամփոփագիրը և արտասահմանյան կարևոր հեռագրեր, որից հետո հասցվում է ագիտատորներին, նախօրյան նրանց զրույցի կազմակերպումը, իսկ հեռախոս չունեցող գյուղերի հերթա-



պահներն ստանում են հեռախոս ունեցող գյուղերից:

Այսպիսով, Ալավերդու շրջանում օրվա նորությունները նույն օրը հասցվում են աշխատավորությանը:

★Օրվա նորությունները ժամանակին տեղ հասցնելու գործը լավ է կազմակերպել նաև Իջևանի շրջանի պարտշրջկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժինը (բաժնի վարիչ ընկ. Եղյարյան): Շրջանի երեք ենթաշրջանների կենտրոններում ունեն ռադիո-ընդունիչներ: Ռադիո-ընդունիչներին պատասխանատու դարձրած ընկերներն ընդունում են ՀՀԳ-ի հաղորդագրությունները և նույն օրը ուղարկում իրենց ենթաշրջանի բոլոր գյուղերը: Սովետական Ինֆորմբյուրոյի օրվա հաղորդագրությունները հասնում են գյուղ: Այսպիսով, Իջևանի ամենահեռու գյուղի աշխատավորը օրվա նորությունն ստանում է նույն օրը և մասսայականացնում աշխատավորության մեջ:

---

## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ!

*Խնդրում ենք ձեզ հետաքրքրող հարցերի մասին գրել «Ագիտատորի բլոկնոտի» խմբագրությանը (ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին), պատասխանները կտպագրվեն մեր բլոկնոտի հերթական համարներում:*

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Պատասխանատու խմբագիր՝ Մ. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 01592 պատվեր 939 տիրաժ 4500

ՀՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան, 1944 թ.